# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՎԵՐՋԻՆ ՊԱՐԹԵՎ ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՀՌՈՄԻ ԴԵՄ

ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Ս. Տ. ԵՐԵՄՅԱՆ

*Ինչպես հաղորդում է Խորենացին, Վաղարշ II-ի եղերական մահից հետո «առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորին»[1], իբրև ժամանակակից պարսից Վաղարշ IV (191—208) արքայից արքայի։ Խոսրով I-ի անձնավորության կապակցությամբ կարևոր է նշել 1961 թ. Գառնիում պեղումների ժամանակ հայտնաբերված արամեական արձանագրությունը (առաջին տողը չի պահպանված)։ Այնտեղ հիշատակվում է «...մեծ թագավոր Հայաստանի, որդի Վոլոգաս թագավորի» անձնավորությունը, որի անունը չի կարդացվում։ Ըստ արձանագրության վերծանող Ա. Գ. Փերիխանյանի ճիշտ եզրակացության, եղծված տեղում պիտի լիներ «Խոսրով» անունը և դա Խոսրով I-ն է, (198—216)[2]։*

*Այսպիսով, ճշտվում է Խորենացու տեղեկությունը, որ Խոսրով I-ը իսկապես եղել է Վաղարշի որդին, իսկ վերջինս, անշուշտ, Վաղարշ II-ն է։*

*Գահ բարձրանալուն պես Խոսրով I-ը շարունակում է պատերազմները «հյուսիսականների»՝ բասիլների-ալանների դեմ Բաղկան (Մախելոնիա) երկրում[3]։*

*Պատմահայրը նշում է, որ Խոսրով I-ը «նոյն հետայն միաբանեալ զզօրս Հայոց, անցանէ ընդ լեառնն մեծ, վրէժս պահանջելով զմահուան հօրն»։ Խոսրովը «վանեալ սրով և գեղարդեամբ ղհզօր ազգսն զայնոսիկ, մի ի հարիւրոց յամենեցունց պիտանեացն առնու պատանդս. և զիւրոյ տէրութեանն նշանակ՝ արձան հաստատէ հելլենացի գրով, որպէս զի յայտ լիցի, ընդ հնազանդութեամբ լինել Հռոմայեցւոց»[4]։ Եթե այս տեղեկությունը ճիշտ է, այստեղ խոսք կարող է լինել Բաղկան-Մախելոնիայի նվաճման մասին և արձանագրությունը հավանաբար կանգնեցված է եղել Շամախուց դեպի հյուսիս գտնվող*

---

[1] *«Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», Տփղիս, 1913, Բ, կե, էջ 200։ Հայ մատենագիրները ամբողջ III դարի ընթացքում գիտեն մի «Խոսրով Մեծն» անունով թագավոր։ Խորենացին, Խոսրով I-ի գահակալման մասին խոսելիս, ասում է. «Ի Վաղարշայ առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորա, հայր սրբոյ մեծին Տրդատայ»։ Փաստերի ուշադիր բաղդատումը ցույց է տալիս, որ Վաղարշ II-ի որդին հույն-հռոմեական աղբյուրների Χοσρόης-ն է, որ, ինչպես կտեսնենք սույն հոդվածում, Խոսրով I-ը պիտի լինի։ Վերջինիս որդին է Խոսրով II՝ հայ մատենագրության «Խոսրով Մեծն», օտար աղբյուրների Τιριδάτης— Տրդատը, որ Տրդատ II-ն է և թագավորել է 217—256 թթ.։ Վերջինիս որդին է Տրդատ III Մեծը (274—330), որը քրիստոնեությունն ընդունեց և այն հռչակեց Հայաստանի պետական կրոն։*

2 *Տե՛ս* А. Г. Периханян, Арамейская надпись из Гарни, *«Պատմա-բանասիրական հանդես», 1964, № 3, էջ 123 և հտ.։*

3 С. Т. Еремян, Страна «Махелония» надписи Кааба-и Зардушт, «Вестник древней истории», 1967, № 4, *էջ 47—58։*

4 *Խ ո ր ե ն ա ց ի, Բ, կե, էջ 200։*

Ղոնաղ-Քենդի լեռնանցքում[5], որը Եղիշեի «Պահլ դուռն»[6] է։ Նրանից այն կողմ, դեպի հյուսիս գտնվում էր Մազքթաց Արշակունիների բուն երկիրը՝ Ջողը։

Վաղարշ II-ի և Խոսրով I-ի այդ պատերազմները կոչված էին ամրապնդելու ոչ միայն Մեծ Հայքի, Աղվանքի և Վիրքի անվտանգությունը, այլև Հռոմեական կայսրության սահմանները Միջագետքում, ինչպես և պարթևական պետության թիկունքը Ատրպատականում և Մեդիայում։ Կովկասյան հյուսիսի անվտանգության հարցում երկու մարտնչող աշխարհակալությունների շահերը միատեսակ էին և գոյություն ուներ փոխադարձ համաձայնություն[7]։

Առաջին տասը տարին Խոսրով I-ը թագավորում է խաղաղ պայմաններում։ Սեպտիմիոս Սևերոսը 198—199 թթ. ավարտում է «պարթևական պատերազմը», որից հետո վերադառնում է Հռոմ և այնուհետև մինչև իր մահը, որ տեղի ունեցավ 12 տարի անց (211 թ.), Արևելքի խաղաղությունը չի վրդովվել հռոմեական զենքի շառաչյունով։ Միայն նրա որդի Անտոնինոս Կարակալլայի (211—217) գահակալումից հետո Արևելքում նորից խախտվում է խաղաղությունը։

Ճիշտ է, հռոմեական սահմանագիծը առժամանակ խաղաղ վիճակում էր գտնվում, բայց այդ բնավ չէր նշանակում, թե Արևելքում իսկապես անդորրություն էր տիրում։ Պատերազմական գործողությունները հյուսիսից սպառնացող հրոսակախմբերի դեմ հազվադեպ էին դադարում, իսկ պարթևական թագավորության մեջ նորից էին բռնկվել գահակալական կռիվները։ Սակայն շատ ավելի տագնապալից վիճակ էր ստեղծվել Պարսք նահանգում, որտեղ սկսված անջատողական շարժումը հանգեցրեց նոր իրանական դինաստիայի՝ Սասանյանների գերիշխանության հաստատմանը։

Իրանի հարավային մասում գտնվող Պարսք նահանգում տեղի ունեցող դեպքերը դրսի աշխարհում դիտվում էին իբրև համապետական նշանակություն չունեցող տեղական դեպքեր։ Ո՛չ պարթև Արշակունիները, ո՛չ էլ Հռոմը ձայր առած այդ շարժմանը լուրջ ուշադրություն չէին դարձնում։

Պարսք երկիրը, որը Աքեմենյան Իրանի աշխարհակալության կենտրոնական նահանգն էր, հույն-մակեդոնական նվաճումներից հետո կորցնում է իր նախկին փառքը, նրա մայրաքաղաք Պերսեպոլիսը ավերվում է և այլևս չի վերականգնվում։ Նրա փառավոր ավերակների կողքին հիմնվում է նոր կենտրոն՝ Ստահր քաղաքը։

Պարսքը, իբրև պարսիկ ժողովրդի օրրան, հնուց ի վեր վայելում էր որոշ արտոնություններ, որից Իրանի այլ նահանգները զուրկ էին։ Պարսքում մնում էին կիսանկախ թագավորներ, որոնց մ. թ. ա. III դարից վերապահված էր արծաթե դրամ հատելու արտոնությունը[8]։ Ստահրում նստող կուսակալները՝ «շաթրադարները» («շահրդար»), ըստ երևույթին, մ. թ. II դարի սկզբից, նշանակվում էին Բազռանգի դինաստիայից և արդեն կրում էին «շահ» (թագավոր) տիտղոսը։ Պարսքի «շահն» էր նշված դինաստիայից Գոճիհրը։ Պարսքը պարթևական Իրանի այն երկիրն էր, որտեղ անաղարտ պահպանվում էին զրադաշտական կրոնի ավանդները։ Ստահրի զրադաշտական տա-

5 Ս. Տ. Երեմյան, Վաղարշ II-ի քաղաքական հարաբերությունները Հռոմի և պարթևների հետ, «Պատմա-բանասիրական հանդես», 1976, № 4, էջ 47։

6 «Եղիշէի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Երևան, 1957, Ա, Բ, էջ 9, 19։

7 Տե՛ս Т. Моммзен, История Рима, т. V, М., 1949, էջ 365։

8 В. Г. Луконин, Культура Сасанидского Ирана, М., 1969, էջ 31։

ճարը նվիրված էր Անահիտ դիցուհուն և նրա քրմապետի պաշտոնը ժառանգական արտոնությունն էր առասպելական Բահմանի տոհմի շառավիղների, որոնցից էր Սասանը, Արտաշիրի պապը: Քրմապետ Սասանը ամուսնացած էր Բազրանգի տան արքայադստեր հետ, որի հայրն էր Գոճիհրը: Սրա նստավայրն էր Ստահր քաղաքից 50 կմ հարավ-արևմուտք գտնվող «Դառ-ի Սպետ» («Սպիտակ դուռն») ապարանքը, որտեղ, ըստ ավանդության, նրան ներկայանում է Սասանի թոռ և իր թոռնորդի յոթնամյա Արտաշիրը՝ Սասանյան արքայատոհմի ապագա հիմնադիրը[9]: III դարի սկզբներին նպաստավոր պայմաններ էին ստեղծվել Սասանյան դինաստիայի բարձրացման համար: Ըստ պատմական ավանդության, Գոճիհրի խորհրդով Արտաշիրը դառնալու էր Դարաբգերդ քաղաքի արգապետ (ամրությունների պետ)[10]: Համաձայն այդ նույն ավանդության, շուրջ 201—202 թթ. Դարաբգերդի արգապետը մահանում է և այդ պաշտոնը տրվում է Սասանի թոռ և Փափագի որդի Արտաշիրին[11]: Ստեղծված իրադրությունը, այսպիսով, առաջին Սասանյաններին հնարավորություն է տալիս հափշտակել քաղաքական իշխանությունը տեղական հինավուրց ժառանգական կառավարիչներից և ստեղծել Իրանի արքայից արքաների նոր դինաստիա: Ըստ երևույթին, պարթևական արքայից արքա Վաղարշ IV-ի մահը արագացրեց դեպքերը: 208 թ. սեպտեմբերի 30-ի և 209 թ. սեպտեմբերի 29-ի միջև Սասանի որդի Փափագը հափշտակում է Պարսքի արքայական գահը իբրև «մարզպան և շահրդար Պարսքի»: Ինչպես տեսանք հոգևոր իշխանությունը, այսինքն Անահիտի մեհյանի[12] քրմապետի պաշտոնը, վարում էր Սասանը, իսկ այժմ նրա տոհմը ձեռք է բերում նաև քաղաքական իշխանությունը[13]:

Այս հեղաշրջումը Ստահրում տեղի է ունենում «խաղաղ ճանապարհով»: Հին դինաստիայի շառավիղները չէին ոչնչացվել և արտաքուստ շարունակում էին վայելել նախկին պատիվները: Ըստ մեզ հասած տեղեկությունների, դեռևս արքայից արքա Արտաշիր I-ի (227—247) արքունիքում տակավին մեծ պատվով ապրում էր վերացած դինաստիայի շառավիղ «Ստահրի թագուհի» տիտղոսը կրող Խորանձեմը (Փառանձեմ), որի դուստրն էր Վարազդուխտը[14]: Խորանձեմը, իբրև «Ստահրի թագուհի», գրեթե մինչև 230-ական թթ. անվանապես համարվում էր Պարսքի կառավարիչ:

Մեծ Հայքի գահակալ Խոսրով I-ը առաջիններից մեկն էր, որ ուշադրություն դարձրեց Պարսքում տեղի ունեցած դեպքերին ու թերևս սա է հիմք

9 М. М. Дьяконов, Очерк истории древнего Ирана, М., 1961, էջ 257:

10 Հայերենում «արկ» նշանակում է «աւան» և հոմանիշ է պահլավերեն ու պարսկերեն ark—«միջնաբերդ» բառին: Հայերենում պիտի լիներ «արկապետ»՝ բերդագլուխ, բերդապետ նշանակությամբ: Տե՛ս Հր. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատ Ա, Երևան, 1971, էջ 322, «Արկ» բառի տակ:

11 В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 33, ծան. 8:

12 Ենթադրվում է, որ Անահիտի մեհյանի շենքն է մեզ հասած «Քաաբա-ի Զարդուշտ» կոչված հուշարձանը:

13 Առաջին անգամ Ռ. Գիրշմանը ուշադրություն դարձրեց, որ քաղաքական իշխանության ձեռքբերման տարեթիվը՝ 209 թ., հռչակվում է նոր՝ Սասանյան էրայի սկիզբ: 209 թ. Սասանյանների կողմից Պարսքում հատվող դրամների վրա արդեն երևում են Սասանի, Փափագի և նրա որդիներ Շապուհի ու Արտաշիրի անունները: Հետագայում յուրաքանչյուր Սասանյան «շահնշահ» ուներ իր թագավորական էրան, որը սկսվում էր նրա թագադրության օրից և վերջանում նրա հաջորդի գահ բարձրանալով (տե՛ս В. Г. Луконин, նշվ. աշխ., էջ 28):

14 Նույն տեղում, էջ 33:

հանդիսացել այն բանի, որ հայկական պատմական ավանդությունը այս Խոսրովին ներկայացնում է իբրև Սասանյան առաջին տիրակալների դեմ համառ մարտնչողի։ Ագաթանգեղոսը անշուշտ նկատի ունի 209 թ. Իրանում տեղի ունեցած պետական հեղաշրջումը, երբ հաղորդում է, որ այս գույժը հասավ «առ Խոսրով, թագաւորն Հայոց,— որ էր երկրորդ տէրութեանն Պարսից, զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն»[15]։

Արշակունի դինաստիայի համար այս տագնապալից պահին դինաստիայի տարբեր ներկայացուցիչների միջև միասնություն չկար։ 208 թ., երբ Վաղարշ V-ը Տիզբոնում գահ բարձրացավ, նրա և իր եղբոր՝ Արտավանի միջև գահակալական կռիվներ սկսվեցին, իսկ հինգ տարի հետո՝ 213 թ., Արտավանը իրեն հռչակեց արքայից արքա ու թագավորեց ամբողջ հյուսիսային Իրանում և Մեդիայում[16], կենտրոն ունենալով Էկբատանը (այժմ՝ Համադան)։ Ինչպես նշվեց, Տիզբոն մայրաքաղաքը, Ստորին Միջագետքով հանդերձ, գտնվում էր Վաղարշ V-ի իշխանության ներքո։ Տիզբոնում էր նրա արքունիքը, ուստի մի առ ժամանակ նա էր համարվում ամբողջ Իրանի «օրինավոր թագավոր»։ Սակայն Վաղարշ V-ի իշխանության տարածքը հետզհետե սահմանափակվում էր նախ Ստորին Միջագետքով, ապա և Տիզբոն-Սելևկիա մայրաքաղաքի քաղաքային տերիտորիայով։ Սելևկիայում Վաղարշ V-ի անունով հատվում էին ոսկե չորեքդրամյաններ (տետրադրաքմե), որոնք թվագրվում են մինչև 223 թ.[17]։ Վաղարշ V-ի ախոյան և եղբայր Արտավան V-ը կարող էր միայն արծաթե դրամ հատել, ըստ երևույթին, Էկբատանում[18]։ Այս փաստը ցույց է տալիս, որ, այնուամենայնիվ, Արտավան V-ը Վաղարշ V-ի համեմատությամբ գտնվում էր ստորադաս վիճակում։ Սակայն արտաքին աշխարհում ավելի մեծ հեղինակություն էր վայելում Արտավան V-ը։ Հայկական պատմական ավանդույթը ցույց է տալիս, որ հայոց թագավորը վերջինիս ավելի մոտ էր, քան Վաղարշ V-ին և նույնիսկ Արտավանի հետ դաշնակցած պայքարում էր սրա դեմ։ Ուստի ավանդական պատմության հայոց թագավոր Խոսրովը, որը պայքարում էր Պարսքում բարձրացող Սասանյանների դեմ և Արտավան V-ի հավատարիմ պաշտպանն ու դաշնակիցն էր, կարող էր լինել միայն Խոսրով I-ը։

Որքան էլ կցկտուր ու միակողմանի լինեն Ագաթանգեղոսի և Խորենացու տեղեկությունները, որոնք շփոթում են երկու Խոսրովներին, այնուամենայնիվ հնարավոր է զատել այն տեղեկությունները, որ վերաբերում են Խոսրով I-ին։ Պետք է նկատի ունենալ, որ 213 թ. հետո, երբ Արտավան V-ը իրեն թագավոր հռչակեց, Խոսրով I-ը թագավորեց ընդամենը չորս տարի (213—

15 Ագաթանգեղոս, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1909, գլ. Ա, 18, էջ 15։

16 Արտավան V-ի վերջին պաշտոնական արձանագրությունը թվագրվում է 215 թ. սեպտեմբերի 14-ով։ Դա վերջերս Շոշում հայտնաբերված «Հվասակի ստելան» է։ Համարելով իրեն «օրինավոր» ժառանգ, նշված արձանագրության մեջ Արտավան V-ը ընդգծում է այդ իր տիտղոսով՝ «Արտավան արքայից արքա, որդի արքայից արքա Վաղարշի» (տվյալ դեպքում նկատի ունի Վաղարշ V-ի և իր հորը՝ Վաղարշ IV-ին)։ Նշված արձանագրության տեքստը զետեղված է բարձրաքանդակին կից։ Այն ներկայացնում է գահի վրա նստած Արտավան V-ին, որը հանձնում է իշխանության պսակը Շոշի խշաթրապ (փոխարքա) Հվասակին (В. Г. Луконин. նշվ. աշխ., էջ 30, 45)։

17 Նույն տեղում, էջ 37։

18 Նույն տեղում, էջ 34։

216) և այդ ժամանակամիջոցում նա պայքարում էր ոչ թե Սասանյանների դեմ, որոնք դեռ դուրս չէին եկել Իրանի արևմտյան նահանգները և դրանով իսկ միջազգային քաղաքական ասպարեզ, այլ իր զենքով օգնում էր Արտավանին հաստատվելու Տիզբոնի դահի վրա։

Պատմագրության մեջ Խոսրով I-ի պայքարը Վաղարշ V-ի դեմ, ի պաշտպանություն Արտավան V-ի շահերի, պատկերացվել է իբրև պայքար Սասանյանների դեմ, որ ճիշտ չէ։ Ժամանակագրական տվյալները ակնհայտ են դարձնում, որ Խոսրով I-ը ժամանակակից էր միայն 208/9 թթ. Պարսքում տեղի ունեցած հեղաշրջման, իսկ Սասանյանների վերջնական հաղթանակը տեղի ունեցավ նրա մահվանից 10 տարի հետո (227), երբ Մեծ Հայքի թագավոր էր նրա որդի «Խոսրով Մեծ» Տրդատ II-ը (217—256)՝ առաջին հայ թագավորը, որ պայքար էր մղում Սասանյանների ագրեսիայի դեմ։ Այս հանգամանքը լավ է նկատել Հ. Մանանդյանը։ Նա իրավացիորեն նշում է, որ «հայ պատմիչների մոտ վիպական Խոսրովին վերագրված պարսիկների դեմ պատերազմները հիշողություն են, իրապես, այն երկարատև ու համառ կռիվների, որ պատմական այս Տրդատ Բ-ը իբրև հռոմայեցիների դաշնակից ու վասալ, վարել էր Արտաշիր Ա-ի և Շապուհ Ա-ի դեմ»[19]։

Խոսրով I-ի թագավորության վերջին տարիներին (213—216) են վերաբերում Ագաթանգեղոսի տեղեկությունները դեպի Տիզբոն հայոց թագավոր Խոսրովի արշավանքների մասին։ Ագաթանգեղոսը հաղորդում է. «Արդ ի միւս ևս ի գլուխ տարւոյն, սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօր բովանդակել, գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց և զՃորայ պահակին, հանել զզօրս Հոնաց, ասպատակ դնել ի կողմանս Պարսից, արշավել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիսբոնի...»[20]։ Այս հաղթական արշավանքից հետո «թագաւորն Հայոց,— ըստ Ագաթանգեղոսի,— դառնայր ի մեծ կոտորածէն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ և ցնծալից ուրախութեամբ ի կողմանսն Հայոց յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, մեծաւ ուրախութեամբ և բարի անուամբ և բազում աւարաւ»[21]։ Այնուհետև Խոսրովը հեռավոր ուխտագնացություն է կատարում դեպի իր թագավորության արևելյան ծայրամասը՝ Կասպից երկիրը (Բաղասական) Կասպից ծովի ափերին։ Ինչպես հաղորդում է Ագաթանգեղոսը, Խոսրով I-ը «յեօթն բագինս մեհենիցն[22] ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման... զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր»։ Թագավորը տաճարին է պարգևում պատերազմական ավարի հինգերորդ մասը և «մեծամեծ պարգևս քրմացն շնորհէր»[23]։

Ագաթանգեղոսի տեղեկությունների համաձայն, հետևյալ տարին Խոսրովը նորից է արշավում դեպի հարավ։ «Իսկ ի գալուստ ամին միւսոյ զօր բազում կուտէր, յոյժ, գումարտակ առնէր, ընդոյն զօր կոչէր, և ևս բազում

19 Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 85։

20 Ագաթանգեղոս, գլ. Ա, 19, էջ 16։

21 Նույն տեղում, 21, էջ 18։

22 Նույն Կարառու բագինքն է, Պտղոմեոսի *Γαβαροι βωμοι (աղճատված ընթերցումն է՝ Γάβαοι βωμοί), տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 46, 51։

23 Ագաթանգեղոս, գլ. Ա, 22, էջ 18—19։

քան զնոյն ապստամբ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի, մանաւանդ զի և զօրք Տաճկաց ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զերկիրն ամենայն՝ քաջութեամբ դառնային իւրաքանչիւր տեղիս»[24]։ Այս երկրորդ վկայության մեջ ուշադրության արժանի է «զօրք Տաճկաց», այսինքն արաբական ցեղերից մեկի, հավանաբար Հադրայի արաբական թագավորության զորամասերի օգնությունը հայոց Խոսրով թագավորին։

Այս արշավանքները, ինչպես պարզեցինք, տարվում էին ոչ թե Սասանյանների, այլ Տիզբոնում գահակալած Վաղարշ V-ի դեմ, որպեսզի Արտավան V-ը հաստատվեր Տիզբոնի գահի վրա[25]։

211 թ. մահացած Սեպտիմիոս Սևերոսին հաջորդեց իր ավագ որդին՝ Բասսիան Անտոնինոսը (211—217), որը հայտնի է «Կարակալլա» մականունով. Սա, ծանոթանալով պարթևական թագավորության մեջ գոյություն ունեցող իրադրությանը, որոշում է օգտագործել այն։ Իրեն երևակայելով մի նոր Աղեքսանդր Մակեդոնացի, Անտոնինոս Կարակալլան ձգտում էր տեր դառնալ պարթևական ժառանգության։

Հաջողությամբ ավարտելով 213 թ. պատերազմը գերմանական և մերձդանուբյան ցեղերի դեմ, նոր կայսրը, փառասիրական ձգտումներով առլեցուն, գալիս է Արևելք, Ասորիքի կենտրոն Անտիոք քաղաքը։ Տեղեկացած լինելով Վաղարշ V-ի և Արտավանի միջև գահակալական պայքարի մասին, Կարակալլան նեղ վիճակի մեջ է դնում Վաղարշ V-ին և ստիպում նրան դառնալ իրեն ենթակա «դաշնակից» թագավոր։

Պատրաստվելով նոր պատերազմի, Անտոնինոս Կարակալլան պատրվակ էր փնտրում, որպեսզի առիթ ունենա բախվելու պարթևների հետ։ «Երբ նա արշավեց պարթևների դեմ,— հաղորդում է Կասսիոս Դիոնը,— այդ պատերազմը պատճառաբանեց նրանով, որ Վոլոգեսոսը, երբ ինքը նրանից պահանջեց Տիրիդատեսին և նրա հետ ոմն Անտիոքոսի, նրանց չհանձնեց»[26]։ Ինչպես ճիշտ ենթադրում է Հ. Մանանդյանը[27], այստեղ հիշատակվող Տիրիդատես-Տրդատ Արշակունին, հավանորեն, Վաղարշ V-ի հորեղբայրն էր, իսկ Անտիոքոսը կիլիկեցի էր և կինիկյան դպրոցին պատկանող փիլիսոփա։ Այս երկուսը փախել էին պարթևական թագավորի մոտ և այժմ Անտոնինոս Կարակալլան պահանջում էր ետ վերադարձնել նրանց։ Եթե նկատի ունենանք,

---

24 Նույն տեղում, գլ. Բ, 23, էջ 19։

25 Մեջ բերված փաստերի լույսի տակ հերքվում է Կիրիլ Թումանովի այն ենթադրությունը (որին ժամանակին համաձայն ենք եղել նաև մենք), որ Ագաթանգեղոսի վկայությունները բացահայտ հիշատակություն են Տիզբոնի դեմ Սեպտիմիոս Սևերոսի 198 թ. պատերազմի, երբ, այնուհետև, 199 թ. պաշարվեց սահմանակից Հադրան և պատերազմներ տեղի ունեցան հռոմեացիների և արաբների միջև։ Տե՛ս Cyrille Toumanoff, The Third-Century Armenian Arsacids. A Chronological and Genealogical Commentary, „Revue des études arméniennes, Nouvelle serie, tome VI, Paris, 1969, էջ 238—239։ Ա. Տ. Երեմյան, Վաղարշ II-ի քաղաքական հարաբերությունները Հռոմի և պարթևների հետ, էջ 47։

26 „Cassii Dionis Cocceiani Historiarum Romanorum quae supersunt", „Loeb Classical Library", գիրք 78, 19, 1. հայերեն թարգմանությունը՝ «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», 9, «Հռոմեական պատմություն (հատվածներ), թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Ս. Մ. Կրկյաշարյանի. Երևան, 1976 (այսուհետև՝ Dio հայերեն թարգմ.), էջ 222։

27 Հ. Մանանդյան, նշվ. աշխ., էջ 59 և նույն էջի ծան. 1։

որ հյուսիսից Վաղարշ V-ի դեմ պատերազմում էր իր եղբայր Արտավանը, ապա պարզ կդառնա, որ Վաղարշ V-ի վիճակը ծանր էր։ Ստեղծված պայմաններում նա գերադասում էր խաղաղ փոխհարաբերությունների մեջ լինել Հռոմի հետ և Տրդատ Արշակունուն ու Անտիոքոս փիլիսոփային հանձնում է Կարակալլային։ Այս տմարդի գործարքը, որը պիտի զայրույթ առաջացներ Տիզբոնի արքունիքում, բոլորովին հեղինակազուրկ է անում Վաղարշ V-ին և օգտագործվում է Արտավանի ու նրա դաշնակիցների կողմից։ Վաղարշ V-ը հաղթված էր և՛ ներքին, և՛ արտաքին թշնամիների կողմից, այժմ նրա միակ հենարանն էր մնում Հռոմեական կայսրության «հովանավորությունը»։

Պարթևների գործերին միջամտելու առաջին պատրվակը, ինչպես տեսանք, խափանվեց։ Այժմ Կարակալլան նոր առիթ էր որոնում, և առիթը գտնվեց. կայսրը Արտավանին պատերազմ է հայտարարում իր «դաշնակից և բարեկամ» Վաղարշ V-ի իրավունքները պաշտպանելու պատրվակով։ Հռոմեական կայսրը գտնում էր, որ դա ամենահարմար առիթն էր պարթևական ժառանգության տեր դառնալու համար։

Նոր քաղաքական իրադրությունը Արևելքում ծանր վիճակ է ստեղծում Հայաստանի համար, որի թագավորը կայսեր «դաշնակից և բարեկամն» էր։ Պարթևների գահակալական պայքարում հայոց թագավոր Խոսրով I-ը անվերապահորեն Արտավանի կողմն էր և ռազմական օգնություն էր ցույց տալիս նրան։ Այժմ, երբ Վաղարշ V-ը դարձել էր Հռոմից կախյալ թագավոր, ռազմական օգնությունը նրա հակառակորդ Արտավանին պիտի դիտվեր իբրև հակահռոմեական ելույթ։ Նույն վիճակում էր նաև Օսրոենեի թագավոր Աբգար X Սեվերոսը (214—216), որը, ինչպես երևում է, նույնպես Արտավանի կողմնակիցն էր։

Մեզ հասած տեղեկությունները ցույց են տալիս, որ Արտավանի դեմ Անտոնինոս Կարակալլայի առաջիկա պատերազմում հայոց թագավոր Խոսրով I-ը ստիպված էր եղել չեզոք դիրք ընդունել։ Չէ՞ որ վասալական պարտավորությունները հայոց թագավորին պարտադրում էին հռոմեացիների հետ միասին կռվել իր բարեկամ և «եղբայր»[28] Արտավանի դեմ։ Խոսրով I-ի այս չեզոքությունը համահավասար էր հակահռոմեական դիրքորոշման, քանի որ հայկական այրուձին չէր կռվելու կայսեր բանակի շարքերում։

Ստեղծված վիճակը մեծ տարաձայնություններ է առաջ բերում հայկական արքունիքում։ Ինչպես երևում է, հայոց ավագանու մի մասը հակված էր մինչև վերջ մնալու Արտավանի կողմը։ Հավանաբար, այդպես էր տրամադրված առաջին հերթին հայոց գահաժառանգ Տրդատը։

Ձմեռը անցկացնելով Անտիոքում, Անտոնինոս Կարակալլան 216 թ. սկզբներին սկսում է պատրաստվել առաջիկա պատերազմական գործողություններին Արտավանի և նրան օգնող հայերի դեմ։ Որպեսզի Արտավանին չեզոքացնի և զրկի իր դաշնակիցներից, կայսրը դիմում է խարդախ միջոցների։ Կասսիոս Դիոնը հաղորդում է, որ Անտոնինոս Կարակալլան, «խաբելով Օսրոենեի Ավգարոս թագավորին, համոզեց նրան իբրև բարեկամի գալ իր մոտ, որից հետո նրան ձերբակալելով կալանավորեց և այդպիսով Օսրոենեն,

28 Հելլենիստական Արևելքի արքունիքներում ընդունված պատվավոր տիտղոս։ Բնագրերի «եղբայր» բառը, որ գործ է ածվում Խոսրով I-ի համար, հետազոտողների կողմից ընդունվել է բառացի և վերջինս համարվել է պարթև Արտավան V-ի եղբայրը։

որը մնացել էր առանց թագավորի, հպատակեցրեց»[29]։ Հռոմեական զորքերը գրավում են Օսրոէնեի մայրաքաղաք Եդեսիան և այն հռչակվում է հռոմեական գաղութ։

Այնուհետև Կասսիոս Դիոնը տեղեկացնում է հայոց թագավորի մասին. «Իսկ Հայոց թագավորին, որը վեճի մեջ էր իր որդիների հետ, բարեկամական նամակներով նույնպես կանչեց, իբր նրանց հաշտեցնելու պատրվակով, բայց սրանց հետ ևս վարվեց այնպես, ինչպես Ավգարոսի հետ»[30]։ Ուրեմն Խոսրով I-ին ևս ձերբակալեցին և կալանավորեցին, ինչպես և նրա կնոջը՝ հայոց թագուհուն։ Այս պիտի տեղի ունեցած լիներ 216 թ. մայիս ամսին։

Կայսեր այս տմարդի վերաբերմունքը Խոսրով I-ի հանդեպ Հայաստանում առաջ բերեց ապստամբական շարժում հռոմեացիների դեմ[31]։ «Սակայն հայերը չհանդուրժեցին նրան (Կարակալլային),— շարունակում է Կասսիոս Դիոնը,— այլ դիմեցին զենքի ու այլևս նրանցից ոչ ոք երբեւիցե ոչ մի բանում նրան չէր հավատում, այնպես որ նա գործով սովորեց, թե որքան վնասաբեր է կայսեր համար խաբեությամբ վերաբերվել բարեկամներին»[32]։

Անտիոքում նստած կայսրը գտնում էր, որ երկու եղբայրների՝ Վաղարշ V-ի ու Արտավանի գահակալական կռիվը իր բանսարկությունների արգասիքն է։ Կասսիոս Դիոնի ասելով կայսրը «մեծապես պարծենում էր, որ պարթևների թագավոր Վոլոգեսոսի[33] մահից հետո նրա որդիները կռվում էին գահի շուրջ, պատահաբար կատարվող այդ դեպքերը վերագրելով իր կատարած նախապատրաստական աշխատանքին»[34]։

Անտոնինոս Կարակալլան ապստամբ հայերի դեմ ուղարկել էր Թեոկրիտոս զորավարին, որը «նրանց կողմից պարտության մատնվեց և ծանր դժբախտության մեջ ընկավ»[35]։ Հայերը բացեիբաց անցան Արտավանի կողմը և կռվում էին նրա հետ միասին և՛ հռոմեացիների, և՛ Վաղարշ V-ի դեմ։ Սրա արդյունքն էր այն, որ Արտավանը կարողացավ ջլատել Կարակալլայի ուժերը և, պարտության մատնելով Վաղարշին, գրավեց Տիզբոն մայրաքաղաքը և իրեն հռչակեց Արտավան «արքայից արքայ»։ Այսպիսով, Տիզբոնը դառնում է հակարքա Արտավան V-ի մայրաքաղաքը, իսկ Վաղարշ V-ը իր արքունիքը փոխադրում է Տիգրիսի արևմտյան ափին գտնվող Սելևկիան, որտեղ թագավորում է մինչև իր մահը (շուրջ 223 թ.)։ Մի առ ժամանակ, Հերոդիանոսի բառերով ասած, Արևելքում «թագավորում էր խոր խաղաղություն»[36]։

Ապստամբած հայերը թագավոր հռչակեցին գահաժառանգ Տրդատին, որ հայոց թագավոր Տրդատ II-ն է, հայ մատենագրության Խոսրով Մեծը։ Այժմ

---

29 Dio, գիրք 78, 12, 1, հայերեն թարգմ., էջ 221։

30 Նույն տեղում։

31 Ըստ երևույթին, Խոսրով I-ի ձերբակալման հետ է կապվում Խորենացու տեղեկությունը (Բ, կզ), ըստ որի այդ ժամանակ Անի ամրոցի մեհյանի դիվանում գտնվող Բարդածանը (154—222) «էր այր կորովի բանիւ. որ և առ Անտոնինոս համարձակեցաւ գրել թուղթս։ Այդ «թուղթը», ամենայն հավանականությամբ, նամակ էր ուղղված Կարակալլային՝ հայոց թագավոր Խոսրովին ու նրա կնոջը ազատելու մասին։

32 Dio, հայերեն թարգմ., էջ 221։

33 Նկատի ունի Վաղարշ IV-ին (191—208)։

34 Dio, նույն տեղում։

35 Նույն տեղում, գիրք 78, 21, 1, հայերեն թարգմ., էջ 222։

36 Herodianus, Ab excessu D. Marci libri octo, IV, 9 (8).

սրա գլխավորությամբ հայերը Արտավան V-ի բանակի շարքերում կռվում էին հռոմեացիների դեմ։

Կարակալլայի կենսագիր Էլիոս Սպարտիանոսի տեղեկության համաձայն, կայսրը զբաղված էր պատերազմով հայերի և պարթևների դեմ[37]։

Չկարողանալով զենքի ուժով հաղթել պարթևներին և Արտավան V-ին, կայսրը դիմում է նոր խարդախության։

Հերոդիանոսի և Դիոն Կասսիոսի տեղեկություններից կարելի է եզրակացնել, որ Կարակալլայի հետևյալ քայլն էր լինելու նրա ամուսնությունը Արտավան V-ի դստեր հետ, որ հնարավորություն կտար նրան սողոսկելու պարթևական արքունիք և իր պարթև կնոջից ծնված երեխային հայտարարելու պարթևական գահի «օրինավոր ժառանգ»։ Սրանից հետո հեշտ էր Հայաստանը և Օսրոենեն դարձնել հռոմեական պրովինցիա։

Համաձայն Հերոդիանոսի, Կարակալլան, այցելելով Փոքր Ասիայի այն վայրերը, որոնք կապված էին Աղեքսանդր Մակեդոնացու հիշատակի հետ, գալիս է Անտիոք, որտեղ նրան ընդունում են մեծ հանդեսներով, իսկ հետո գնում է Եգիպտոսի հռչակավոր Աղեքսանդրիան[38]։ Սրանից հետո էր, որ, ըստ Հերոդիանոսի, Կարակալլան ցանկություն ունեցավ ստանալ «Պարթևական» (Parthicus) պատվավոր կոչումը և զարմացնել հռոմեացիներին իր կողմից ուղարկվող տեղեկություններով Արևելքի «բարբարոսների» նվաճման մասին։ Կայսրը պարթևական թագավոր Արտավանի մոտ դեսպաններ է ուղարկում հարուստ և բազմազան նվերներով։ Նրանց հետ ուղարկած նամակում նա հայտնում էր պարթևների թագավորին, որ ինքը ուզում է կին առնել մեծ թագավոր դստերը և այդ միջոցով աշխարհի երկու պետությունները միաձուլել, որով նրանք կդառնան անհաղթելի[39]։ Արտավան V-ը, ըստ Հերոդիանոսի, նախ մերժում է, ապա, վերջիվերջո, գալիս է համաձայնության[40]։

Այս անցքերի մասին Դիոն Կասսիոսը հետևյալ տեղեկություններն է պահպանել. «Այնուհետև (Անտոնինոսը) արշավեց պարթևների դեմ այն պատրվակով, որ Արտաբանոսը չէր ցանկացել իր դստեր ամուսնության տալ իրեն — քանզի (Արտաբանոսը) լավ էր հասկանում, որ նա խոսքով իբր ուզում է իր աղջկա հետ ամուսնանալ, բայց իրականում ցանկանում էր սեփականել պարթևների թագավորությունը»[41]։ Ահա սրա համար էլ Անտոնինոսը, շարունակում է Դիոն Կասսիոսը, «արշավեց պարթևների դեմ այն պատրվակով, որ Արտաբանոսը չէր ցանկացել իր դստեր ամուսնության տալ իրեն»։ Պատմաբանի ասելով, Անտոնինոսը «հանկարծակի հարձակվելով, մեծ տարածության վրա երկիրը ավերեց Մեդիայի շուրջը, մեծ թվով բերդեր նվաճեց, գրավեց Արբելան, և բաց անելով պարթևների արքունի դամբարանները, ցրիվ տվեց ոսկորները, քանի որ պարթևները նույնիսկ չկռվեցին նրա դեմ»[42]։ Ինչ-

[37] Aelius Spartianus, Antoninus Caracalla, VI (1), տե՛ս ВДИ, 1958, № 2, էջ 266։

[38] Herodianus, IV, 8 (6).

[39] Նույն տեղում, 9 (8)։

[40] Նույն տեղում, 10 (5), 11 (1)։

[41] Dio, գիրք 79, 1, 1, հայերեն թարգմ., էջ 222։ Բերված են 79-րդ գրքի հատվածները, որոնք այլ հրատարակություններում համարվում են 78-րդ գրքի մասեր։ Հերոդիանոսը բերում է մանրամասնություններ, որ նոր բան չեն ավելացնում. Herodianus, IV, 11 (2—9)։

[42] Dio, գիրք 79, 1, 2, հայերեն թարգմ., էջ 222։

պես երևում է, Արտավան V-ը անցնում է խոր թիկունք, որտեղից նա հարձակվելու էր թշնամուն։ Դիոն Կասսիոսը հաղորդում է, որ «բարբարոսներն ապաստանեցին լեռներում, Տիգրիսից այն կողմ, որպեսզի պատրաստություն տեսնեն, իսկ Անտոնինոսը թաքցնում էր այս, ասես ինքը վերջնականապես հաղթել էր նրանց, որոնց նույնիսկ չէր էլ տեսել»[43]։

Էլիոս Սպարտիանոսի մթագնած վկայության համաձայն, Անտոնինոս Կարակալլան Արբելայից հետո մտել է Մեդիայի խորքերը՝ Ատրպատական և «կադուսիների ու բաբելացիների երկրամասերը անցնելով, սկսել անկանոն պատերազմական գործողություններ պարթևական սատրապների դեմ»[44]։ Ըստ երևույթին, Կարակալլան ուզում էր Իրանի խորքերով հասնել մայրաքաղաք Տիզբոնին, բայց դա նրան չի հաջողվում և, խուսափելով թշնամու ծուղակն ընկնելուց, շտապում է վերադառնալ առանց զգալի հաջողությունների, սակայն Հռոմի շողոքորթ ծերակույտը բախտախնդիր Կարակալլային շնորհում է «Պարթևական» կոչումը[45]։

Ասպատակելով պարթևներին պատկանող տերիտորիաները, Անտոնինոս Կարակալլան վերադարձավ Եդեսիա ձմեռելու, որպեսզի հետևյալ՝ 217 թ. գարնանը նորից արշավանքի ելնի պարթևների դեմ։ Սակայն նրան չէր վիճակված իրագործելու իր հերթական ագրեսիան պարթևների դեմ։

217 թ. ձմեռը Անտոնինոս Կարակալլան անց էր կացնում Եդեսիայից հարավ գտնվող հինավուրց Խառան քաղաքում։ Ինչպես վկայում է Հերոդիանոսը, կայսրը ցանկություն ունեցավ ուխտագնացություն կատարել դեպի Խառանի և Եդեսիայի միջև գտնվող հռչակավոր Լուսնի տաճարը։ Իր հետ նա վերցնում է միայն հեծյալների փոքրաթիվ ջոկատ։ 217 թ. ապրիլի 8-ին, այդ խուլ վայրում, կայսրը սպանվեց իր զինվորականներից մեկի ձեռքով, որից հետո իրադրությունը բոլորովին փոխվեց[46]։

Հենվելով Փերմելիանոսի՝ մեզ չհասած երկի վրա, Խորենացին ճիշտ տեղեկություն է տալիս այս դեպքի մասին։ Փերմելիանոսը գրում է, ասում է Խորենացին, «որ զԱնտոնինէ որդւոյ Սևերեայ ասէ՝ պատերազմեալ ընդ Վաղարշայ Պարսից արքայի[47] ի Միջագետս, և մեռանել ի մէջ Եդեսիայ և Խառանու»[48]։ Այնուհետև պատմահայրը ավելացնում է. «և մերոյն Խոսրովու ոչ յոք հակամիտեալ»[49], այսինքն պահպանելով չեզոքություն, հայոց թագավորը չի անցել ո՛չ Վաղարշ V-ի, ո՛չ էլ Անտոնինոս Կարակալլայի կողմը։ Ինչպես տեսնում ենք, պարթև-հռոմեական պատերազմներում չեզոք դիրք է ընդունել ոչ միայն հայոց թագավոր Վաղարշ II-ը, այլև նրա որդի Խոսրով I-ը, սակայն վերջինս, Արտավան V-ի հետ միասին պայքարում էր Հռոմի

---

[43] Նույն տեղում, I, 4, հայերեն թարգմ., էջ 223։

[44] Aelius Spartianus, նշվ. աշխ., VI, 4, համեմատել՝ „Dehinc per Cadusios et Babilonios ingressu“ (VI, 4), տե՛ս ВДИ, 1958, № 2, էջ 266, նաև՝ C. Toumanoff, նշվ. աշխ., էջ 217—218։

[45] Aelius Spartianus, նշվ. աշխ., VI, 5։

[46] Herodianus, IX, 13 (3), տե՛ս նաև Aelius Spartianus, նշվ. աշխ., VI (6), VII (1, 2)։

[47] Նկատի ունի Վաղարշ V-ին (208—227)։

[48] Խորենացի, Բ, հե, էջ 213։

[49] Նույն տեղում։

«բարեկամ» Վաղարշ V-ի դեմ, որի համար բանտարկվել է Կարակալլայի կողմից։

Դեպքերը այնպես դասավորվեցին, որ մի տասնյակ տարի ևս Արտավան V-ը և պարթև Արշակունիները կարողացան իրենց գոյությունը պահպանել և նույնիսկ իրենց կամքը թելադրել Հռոմին։ Այս նշանակում էր նաև Մեծ Հայքի թագավորության դրության կայունացում, և Հռոմը հարկադրված էր հարգել հայ Արշակունիների գահակալական իրավունքները։

Հետագա դեպքերի մասին տեղեկություններ են տալիս Հերոդիանոսը, Դիոն Կասսիոսը և Հուլիոս Կապիտոլինոսը։ Չնայած իր մանրամասնություններին, ավելի քիչ վստահելի է Հերոդիանոսի պատմածը և ավելի հավաստի են թվում վերջին երկուսը։

Հուլիոս Կապիտոլինոսի համաձայն, Կարակալլայի սպանությունից հետո հռոմեական զինվորների կողմից կայսր է հռչակվում Օպիլիոս Մակրինոսը, որը հանձն է առնում շարունակել պատերազմական գործողությունները պարթևների դեմ[50]։ Պատերազմը տեղի էր ունենում Միջագետքում, Մծբին քաղաքի մոտերքը. սակայն Արտավանը ավելի ուժեղ էր, նա կռվում էր ավելի շուտ հռոմեացիներին պատժելու և Անտոնինոս Կարակալլայի կողմից խաղաղության ժամանակ ուխտադրուժ սպանվածների վրեժն առնելու համար[51]։ Մակրինոսը, կայսր ընտրվելուց հետո, «տեսնելով, որ Արտաբանոսը խիստ զայրացած է իր կրած չարիքների պատճառով, և մեծ զորքով ներխուժել է Միջագետք, նախ ինքնակամ նրան ուղարկեց գերիներին և բարեկամական ուղերձ, խաղաղություն հաստատելու առաջարկով, տեղի ունեցածների պատճառը համարելով Տարավտասին[52]։ Բայց (Արտաբանոսը) չընդունելով այդ, միաժամանակ հրամայեց, որ (Մակրինոսը) վերաշինի քանդված բերդերն ու քաղաքները և ամբողջովին հեռանա Միջագետքից և հատուցում տա ինչպես մյուս բոլորի, այնպես էլ թագավորական գերեզմանների պղծման համար, քանզի նա հույսը դրել էր իր հավաքած մեծաքանակ զորքի վրա և արհամարհելով Մակրինոսին որպես անարժան ինքնակալի, անհագ զայրույթով էր լցված նրա դեմ և հույս ուներ, որ առանց նրա համաձայնության իսկ ինքը կկատարի իր կամեցած ամեն ինչը»[53]։ Արտավան V-ը իրավացի էր, Մակրինոսը ոչ մի համարում չուներ հռոմեական բանակի մոտ, և պարթևների հետ առաջին իսկ ընդհարումներից հետո լեգեոնները նրան լքեցին և անցան Կարակալլայի ապօրինի զավակ Հելիոգաբալի կողմը[54]։ Կասսիոս Դիոնը հաղորդում է, որ «Մակրինոսը նույնիսկ ժամանակ չունեցավ խորհրդակցելու, այլ հանդիպելով նրան (Արտաբանին—Ս. Ե.), դեպի Նիսիբիս առաջանալիս, պարտվեց, երբ ճամբարած իր զինվորները ջրի համար կռվի բռնվեցին թըշնամու հետ։ Քիչ էր մնացել, որ նա նույնիսկ ռազմական ճամբարը կորցներ. բայց այնտեղ գտնվող վահանակիրները և գումակայինները փրկեցին այն. քանզի սրանք քաջալերվելով դուրս եկան ճամբարից և հարձակվեցին բարբարոսների վրա. այս հանկարծակի հարձակումը օգնեց նրանց և թվում էր,

---

[50] Julius Capitolinus, Macrinus, VIII, 1–3.

[51] Herodianus, IV, 14 (1).

[52] «Տարավտաս» Անտոնինոս Կարակալլա կայսեր մականունն է։

[53] Dio, գիրք 79, գլ. 26, 2, 5, հայերեն թարգմ., էջ 223։

[54] Julius Capitolinus, նշվ. աշխ., VIII, 2։

*թե նրանք ոչ թե սպասավորներ են, այլ զինված մարտիկներ...»*[55]։ Կասսիոս Դիոնը շարունակում է ասելով, որ Մակրինոսը, «պարտվելով հունիսի ութին, իր որդուն[56] Եպագաթոսի և մի քանի այլոց միջոցով ուղարկեց Արտաբանոսին, իսկ ինքը մտավ Անտիոք իբրև հաղթանակած»[57]։ Ըստ երևույթին, Մակրինոսը իր որդուն՝ կեսար Դիադումենոսին Միջագետքից ուղարկում է Արտավան V-ի մոտ իբրև պատանդ, մինչև խաղաղության բանակցությունները կսկսվեն, իսկ ինքը շտապում է Անտիոք, այնտեղ ձմեռելու։ Միայն 218 թ. գարնանը Մակրինոսը սկսեց խաղաղության բանակցությունները պարթևների և հայերի հետ։ «Քանզի Մակրինոսը բնածին երկչոտությունից,— շարունակում է Կասսիոս Դիոնը,— ինչպես նաև զինվորների անկարգության պատճառով, չհամարձակվեց պատերազմել, այլ խաղաղության համար շատ առատ ընծաներ պարգևեց ու դրամ ուղարկեց թե՛ Արտաբանոսին, և թե՛ նրա հզորագույն մերձավորներին, այնքան—որ ամբողջ ծախսը կազմեց հինգ հազար բյուր (դրաքմե)»[58]։ Այս «նվերը» պարզապես ռազմատուգանք էր, որ կայսրը տալիս էր Արտավան V-ին, «որից ինքը պարտվել էր»։ Սակայն սա պարթևների վերջին հաղթանակն էր նրանց աշխարհակալության անկման նախօրյակին։ Մակրինոսը Արտավան V-ին վճարում է 5000 բյուր, այսինքն 50 միլիոն դենար, որը հավասար է 200 միլիոն սեստերցի։ Այս գնով Մակրինոսը կարողանում է Արևելքում քիչ թե շատ կայուն վիճակ ստեղծել կայսրության համար։

Հռոմեացիների դեմ պատերազմի մեջ էին ոչ միայն պարթևները Արտավան V-ի գլխավորությամբ, այլև նրա հետ միացած ապստամբ հայերը Նոր գահակալած թագավոր Տրդատ II-ի գլխավորությամբ։ Ինչպես տեղեկացնում է Կասսիոս Դիոնը, Մակրինոս կայսրը, Արտավան V-ի հետ խաղաղության պայմանագիր կնքելով, շտապեց վերականգնել գոյություն ունեցող հարաբերությունները Հռոմի և Մեծ Հայքի թագավորության միջև, որ վատթարացել էին Անտոնինոս Կարակալլայի անմիտ քաղաքականության պատճառով։ «Այսուհանդերձ, հայոց (թագավորի) դեմ նրա մղած պատերազմը ևս,— գրում է Կասսիոս Դիոնը,—... դադարեց, երբ Տիրիդատեսը ընդունեց Մակրինոսի կողմից իրեն ուղարկած թագը, ինչպես նաև մորը, որին Տարավտասը տասնմեկ ամիս պահել էր բանտում, ինչպես նաև ստացավ այն ամբողջ ավարը, որ տարված էր Հայաստանից, և բոլոր այն երկրները, որ նրա հայրը ձեռք էր բերել Կապադովկիայում. նա (Տիրիդատեսը) հույս ուներ նաև ստանալու այն փողը, որ ամեն տարի ուղարկում էին հռոմեացիները»[59]։

Կասսիոս Դիոնի այստեղ բերվող տեղեկությունները թույլ են տալիս ճշտելու մի քանի ժամանակագրական տվյալներ։ Աղբյուրների վկայության համաձայն, Անտոնինոս Կարակալլան սպանվել է Խառանում 217 թ. ապրիլի 8-ին։ Ինչպես ակնհայտ է Կասսիոս Դիոնի ցուցմունքից, հայոց թագուհուն և Խոսրով I-ին Կարակալլան բանտում պահել է 11 ամիս։ Ասել է թե Խոսրով I-ը մահացել է բանտում մինչև Կարակալլայի սպանությունը, այսինքն

---

55 Dio, գիրք 79, գլ. 26, 5, հայերեն թարգմ., էջ 223—224։

56 Նկատի ունի Դիադումենոսին, որին Մակրինոսը, կայսր դառնալով, հռչակել էր կեսար (Julius Capitolinus, նշվ. աշխ., V, 1)։

57 Նույն տեղում, գլ. 39, 1—5, հայերեն թարգմ., էջ 224—225։

58 Նույն տեղում, գլ. 27, 1—3, հայերեն թարգմ., էջ 224։

59 Dio, գիրք 79, գլ. 27, 4, հայերեն թարգմ., էջ 224։

մինչև 217 թ. ապրիլի 8-ը և այդ ժամանակ բանտից ազատվել է կենդանի մնացած հայոց թագուհին, որը առժամանակ մնում էր կայսեր արքունիքում։ Եթե սրանք բանտում են մնացել 11 ամիս, նշանակում է, որ Կարակալլան նրանց հրավիրել և բանտ է նետել 216 թ. մայիս ամսին։ Պարզվում է նաև հայոց թագուհու վերադարձի ժամանակը Հայաստան։ 217 թ. հունիսի 8-ին Մակրինոսը պարտվել է պարթևներից և հայերից, որից հետո նա սկսել է խաղաղության բանակցությունները Արտավան V-ի և Տրդատ II-ի հետ։ Անշուշտ, սկզբում կայսրը խաղաղություն է հաստատել պարթևների թագավորի հետ և հետո միայն վերականգնել այն փոխհարաբերությունները, որ գոյություն ունեին Մեծ Հայքի թագավորության և Հռոմի միջև։ Հայ-հռոմեական բանակցությունների հիմնական պայմանը պիտի լիներ հայոց թագուհու վերադարձը գերությունից, որ պիտի տեղի ունեցած լիներ 217 թ. հունիսի 8-ից հետո։ Այսպիսով, 11 ամիս մնալով բանտում, հայոց թագուհին ազատվել է կալանքից 217 թ. ապրիլի 8-ից հետո և այնուհետև, մինչև Հայաստան վերադառնալը, պահվել է Մակրինոս կայսեր արքունիքում մոտավորապես երկու ամիս։

Հայոց թագավոր Տրդատ II-ի հետ Մակրինոսի բանակցությունների ժամանակ վերականգնվել է հռոմեա-հայկական փոխհարաբերությունների նախկին վիճակը, որ գոյություն ուներ Կարակալլայից առաջ, սկսած Վաղարշ II-ի (186—198) և Սեպտիմիոս Սևերոսի (193—211) միջև կնքված համաձայնագրի (194) ժամանակներից։ Այժմ Մակրինոսը հայոց թագավորին էր վերադարձնում Խոսրով I-ից խլված, Հռոմի կողմից տրված «ձեռական իշխանության» երկրները՝ Կապադովկիայի կազմում գտնվող Փոքր Հայքը (այն առումով, որ տալիս է Պտղոմեոսը, V, 6, 18) և Գիմաթենե գավառը Հայոց Միջագետքում[60]։

Վերին աստիճանի կարևոր է նաև Կասսիոս Դիոնի այն տեղեկությունը, թե Տրդատ II-ը «հույս ուներ ստանալու այն փողը, որ ամեն տարի ուղարկում էին հռոմեացիները»։ Ինչպես տեսանք, Սեպտիմիոս Սևերոսի և Վաղարշ II-ի բանակցությունների ժամանակ վերջնականապես կանոնավորվեց այն կարգը, ըստ որի հայոց այրուձին յուրաքանչյուր տարի Հռոմից ստանում էր դրամական նպաստ՝ «ռոճիկ», որի փոխարեն հայոց սպարապետը իր հեծելազորքով հռոմեական բանակի կազմում մասնակցելու էր կայսեր մղած պատերազմներին[61]։

Հռոմի և Մեծ Հայքի միջև նախկին փոխհարաբերությունները վերականգնելուց հետո հայոց սպարապետը իր հեծելազորքով առաջվա պես գտնվում էր կայսրության զորամասերի հետ. այդ մասին պահպանվել է ուղղակի ցուցմունք էլիոս Լամպրիդիոսի մոտ, որի տեղեկության համաձայն, Մակրինոսի դեմ դավադրություն են կազմակերպել հռոմեական զորքից մի շարք անձնավորություններ, որոնք ուզում էին նրանից ազատվել, սակայն Մակրինոսին հայտնի դարձավ այս և դավադիրները ենթարկվեցին մահապատժի։ Դրանց համախոհների շարքում հիշատակվում է նաև Հայաստանի զորավարը, որին Մակրինոսը ազատել էր պատասխանատվությունից հին

60 Մ. Տ. Ներսիսյան, Վաղարշ II-ի քաղաքական հարաբերությունները Հռոմի և պարթևների հետ, էջ 43—44։

61 Նույն տեղում, էջ 44—45։

բարեկամական փոխհարաբերությունների պատճառով։ Կայսեր այս բարյացակամ վերաբերմունքը հայոց զորավարի հանդեպ մեծ դժգոհություն է առաջացնում Մակրինոսի որդու՝ կեսար Դիադումենոս Անտոնինոսի մոտ[62]։ Հարկավ, այս միջոցառումները, որոնք կոչված էին վերականգնելու կայսրության կշիռը Արևելքում, չփրկեցին Մակրինոսին[63]։

## АРМЕНИЯ И БОРЬБА ПОСЛЕДНИХ ПАРФЯНСКИХ АРШАКИДОВ ПРОТИВ РИМА

Академик АН АрмССР С. Т. ЕРЕМЯН

(Резюме)

Переговоры армянского царя Валарша I (186—198) с Септимием Севером (193—211) в 194 г. значительно укрепили международный авторитет царства Великой Армении на Ближнем Востоке. Удачные рейды Валарша I в земли царства массагетских Аршакидов на Кавказе и продолжение этой политики при его сыне и преемнике Хосрове I (198—216) стабилизировали положение Армянского царства в условиях, когда начавшийся кризис социально-экономических отношений Древнего мира укреплял феодальный уклад. Проявлением этого кризиса было ослабление царства парфянских Аршакидов и распад конфедерации аршакидских царств. Это дало возможность возвыситься жреческой династии храма Анаит в Персиде, в лице Папака и его сына Арташира Папакана — основателя персидской династии Сасанидов.

Римская империя активизировала свою политику на Востоке. Император Антонин Каракалла (211—217), продолжая политику своего отца Септимия Севера, воспользовался борьбой за парфянский престол, которую вели между собой царь Валарш V (208—227) и его брат Артабан V (213—227). В этой борьбе армянский царь Хосров I поддерживал Артабана против Валарша. Однако последний сумел добиться «покровительства» римского императора, и армянский царь оказался в лагере врагов Рима. Это привело к пленению Хосрова I римским императором. Хосров умер в заключении. Восставшие армяне избрали царем сына Хосрова I Тиридата II (Хосров Великий армянских источников), заставившего римлян отказаться от посягательств на Армянское царство.

После убийства Антонина Каракаллы временная стабилизация в Римской империи была нарушена и дела ее стали ухудшаться. В этих условиях воцарившийся император Макрин (217—218) был вынужден признать Тиридата II (217—256) «великим царем Великой Армении».

---

62 Aelius Lampridius, Diadumenus, VIII, 4.

63 Տասնչորս ամիս կառավարելուց հետո (217 թ. ապրիլ—218 թ. հունիս) Մակրինոսը և իր որդի Դիադումենոսը սպանվեցին, հռոմեական զորքերը կայսր հռչակեցին Հելիոգաբալին (218—222), որը ստացավ Անտոնինոս անունը։ Սա վերջինն էր Հռոմեական կայսրության կայսրերի մեջ, որ կրում էր այդ անունը։